

# ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գեղեցիկ եմ բավականին.
Տեսք եմ տալիս բանավանին
Եվ կանգնած եմ բլրին կանաչ՝
Հեռուներին ձեռք երկարած...
Չորս բոլորս նրբահասակ
Բարդիներն են կանգնել պահակ:
Կան և ուրիշ մատղաշ տունկեր,
Մանուկներն են դրանք տնկել.
Աճեցրել են թփեր կանաչ.
Թրաշուշան, վարդակակաչ.
Մագլցել են պատերս ի վեր
Ու մագլցող բույս են կախել...
Եվ իմ ամեն պատուհանին
Տեղադրել են Հայկն ու Անին
Հողով լեցուն ծաղկամաններ.
Ուր կան վարդեր, յասամաններ:
Կա իմ բակում փոքրիկ պուրակ
Եվ խաղերի հրապարակ.
Եվ շատրվան ու ավազան.
Եվ հերոսի մի հուշարձան...
...Թողած հեռվում սար ու ճամբար՝
Մանուկներն են բռնում ճամբաս:
Ես դպրոց եմ նորակառույց.
Սպասում են նրանց վաղուց
Դասարաններ գաջված, կրված,
Գրատախտակներ դեռ չգրված.
Չօգտագործված նստարաններ.
Որ հայելու փայլը ունեն.
Դեռ չհնչած իմ զանգը ջինջ
Այսօրվանից կղողանջի...
Ուսման տուն եմ հինգհարկանի,
Ձեզ կբերեմ «5»-եր քանի՜.
Ձեր դպրոցն եմ նորակառույց.
Ձեզ կբերեմ նոր արշալույս...

digitised by A.R.A.R.@




ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Ամառ է. տոթ է։ Արևն առա՜տ-առատ ճառագայթներ է թափում մեր բակի ու բոլոր բակերի վրա։ Լողավազանները լցված են ջրով ու երեխաներով։ Մենք էլ ամբողջ օրը մտնում ենք ջուրը։ Մեր լողավազանի ջուրն արդեն պղտորվել է, այնքան է պղտորվել, որ հատակը չի երևում... Մենք ենք մեղավոր. ինքներս պղտորում ենք մեր ջուրը։ Թավալվում ենք գետնի վրա, հողաթաթախ նետվում ավազանի մեջ, ջուրը պղտորում, և հատակը չի երևում . . .

Իսկ հիմա գիշեր է, և ցերեկվա շոգը մի քիչ մեղմացել է. հիմա արևը մյուս կիսագնդի վրա է ճառագայթներ թափում։ Պառկած եմ պատշգամբում։ Խաղաղ ու աստղալից գիշեր է, բայց ես անհանգիստ եմ, այնքան անհանգիստ, որ քունս չի տանում. ցերեկն ինձ այրում էր արևը, հիմա՝ խղճի խայթի կրակը, որից ազատվելու համար, երևի, ոչ մի տեսակի լողավազան չկա։ Ինձ տանջում է այն միտքը, որ մեր լողավազանի հատակում շշերի կտորտանքներ կան և ոչ ոք չգիտի այդ մասին, բացի ինձանից ու նրանցից, որոնք այդ շշերը ջարդում ու նետում էին ավազանի մեջ։ Ես էլ այնտեղ էի՝ ավազանի մոտ։ Կանգնել նայում էի, թե նրանք ինչպես են շշերը նետում ավազանը, այն ավազանը, որի մեջ առավոտյան մենք պիտի նետվենք։ Ինչ-որ անծանոթ տղաներ գիշերով մտնում են մեր բակը, նստում լողավազանի եզրին, խմում են, շշերը փշրում ու նետում ջուրը, իսկ ես տեսնում եմ այդ և՝ ոչ մի խոսք. անշարժ կանգնել եմ։

Առավոտյան երեխաները կվազեն բակ, արագ-արագ կհանվեն ու այնպիսի՜ հավեսով ջուրը կընետվեն. ո՞վ պիտի նրանց զգուշացնի, որ հատակում ջարդված շշեր կան՝ ե՞ս։ Եթե ես զգուշացնող լինեի, նրանց՝ այն տղաներին կզգուշացնեի, որ այդպիսի բան չանեն։ Ջուրն էլ պղտորել ենք արդեն, ու ոչինչ չի երևա։ Իսկ մի քանի օր առաջ մեր բակի ավազանի ջուրն այնպես սառն էր, թափանցիկ, ու պարզ երևում էր հատակը՝ ցեմենտե մաքուր հատակը։ Բայց, նույնիսկ, եթե հիմա էլ ջուրը թափանցիկ լիներ, այդ ո՞ր երեխայի, թեկուզ պատանու մտքով կանցնի, թե աշխարհում դեռևս այնպիսի տղաներ կան, որոնք ջարդված շշեր են նետում լողավազանի մեջ, և...

Եվ մոռանալով, որ կեսգիշեր է ու բոլորը քնած են՝ գոռում եմ այդ տղաների վրա.

— Անխիղճնե՛ր։

Անխիղճնե՞ր։ Իսկ ես ունե՞մ խիղճ։ Ինչո՞ւ էի քարի պես անշարժ կանգնել։ Ինչո՞ւ չմոտեցա ու չսաստեցի նրանց։ Գոնե ասեի.



digitised by A.R.A.R.@

— Մենք այս ավազանում լողանում ենք, տղանե՛ր:

Ի՞նչ կանեին նրանք ինձ, եթե ես այդ մի քանի քառը առնի նրանց. կհայհոյեի՞ն, կծեծեի՞ն... Գուցե շշերի հետ ի՞նձ էլ կնետեին ջուրը... Կամ գուցե շշերը կփշրեին գլխի՞ս... Բայց հաստատ համոզված եմ, որ նրանք՝ այդ անխիղճ տղաները, ոչինչ էլ չէին անի ինձ, որովհետև այդպիսիները վախկոտ են լինում: Ու նորից զոռում եմ, բայց այս անգամ՝ ինքս ինձ վրա.

— Իսկ դու քաջ ես, հա՞:

Առավոտյան երեխաները կնետվեն ջուրը, և...

— Վախկո՛տ:

Իսկ բակի բոլոր տղաները կարծում են, թե ես քաջ եմ: Քաջ: Քիչ առաջ պիտի ցույց տայի իմ քաջությունը: Անունս էլ Վարդան է՝ ամենաքաջ հայ սպարապետի անունից. այնինչ՝ պիտի լիներ Նազար, Քաջ Նազար... Ախր, ինչի՞ց էի վախենում, որ նրանք տարիքով ինձանից մե՞ծ էին: Կամ ես մենակ էի, նրանք՝ երե՞քը: Գոնե վազեի ու Սամսոն դայուն՝ մեր դռնապանին ասեի՝ ինչ-որ տղաներ շշեր են գցում իր մաքրած ավազանի մեջ: Սամսոն դային իսկույն վրա կհասներ ու գիտեր, թե ինչ կաներ նրանց... Կամ քեռի Հայկին կարող էի իմաց տալ: Քեռի Հայկն էլ դրանց նմանների հետ վարվելու ձևերը գիտի. նա երևի շշերը կջարդեր նրանց գլխին ու երեքին էլ իրար ետևից կնետեր ջուրը... Կամ ինչո՞ւ միայն քեռի Հայկը. թեկուզ մի որևէ անցորդ բեռու ասեի, որ ինչ-որ տղաներ ջարդված շշեր են գցում երեխաների լողավազանի մեջ: Ու՞մ դիմեի, որ իսկույն չգար ու չասատեր նրանց: Մինչդեռ ես անշարժ կանգնել, նայում եմ. և անունս էլ Վարդան է...

Եվ ավելի ուժեղ եմ զոռում.

— Վախկո՛տ: Վախկո՛տ: Վախկո՛տ:

Ինչո՞ւ էի անշարժ կանգնել ու նայում, ի՞նչ էի մտածում կամ զգում այդ պահին: Ե՞ս էլ անտարբեր եմ կամ՝ անխիղճ ու դաժան նրանց պես...

— Ո՛չ, ո՛չ, ո՛չ:

Ո՛չ, ո՛չ, ո՛չ: Իսկ ի՞նչ: Ինչո՞ւ եմ հիմա՝ այս կեսգիշերին մռնչում, երբ նրանք երևի արդեն վաղուց քնած են իրենց պատշգամբներում: Եթե այսպես առյուծի նման մռնչալ գիտեմ, ինչո՞ւ այն ժամանակ չմռնչացի, որպեսզի նրանք գեթ սթափվեին իմ մռնչոցից...

— Ինչո՞ւ: Ինչո՞ւ: Ինչո՞ւ:

Եվ այնպիսի՜ թախիծ է պատում ինձ: Նայում եմ աստղերին ու մտածում, թե ինչքա՜ն մեծ ու ջերմ են աստղերը, իսկ ես՝ փոքրիկ ու խղճուկ: Սկսում եմ խղճալ ինձ. այնպե՜ս եմ խղճում ինձ: Հետո մտածում եմ, որ ուշ է արդեն, որ ինքնաքննադատությամբ զբաղվելուց հիմա այլևս ոչ մի օգուտ չկա, որ ուղղակի պետք է չքնել մինչև լուսաբաց, առավոտյան վաղ վազել բակ, զգուշացնել բոլորին, որպեսզի հանկարծ որևէ մեկը չնետի իրեն պղտոր ջրի մեջ, որի հատակում սուր-սուր ապակիներ կան:

Սարսափում եմ հանկարծ այն մտքից, որ հիմա էլ քունը կարող է հաղթել ինձ, ու վեր եմ կենում: Մտնում եմ խոհանոց, փառում եմ լույսը, սառը ջրով շփում եմ մարմինս ու դեմքս: Հետո նորից գալիս եմ պատշգամբ, պառկում ու միայն մի բանի մասին եմ մտածում. «Հանկարծ չքնեմ»...

Լուսադեմին քունը, այնուամենայնիվ, ինձ հաղթում է, և քնում եմ: Քունը միշտ էլ հաղթել է ինձ...

Ինձ արթնացնում են արևի ճառագայթները: Կարծես ասում են.

—Վե՛ր կաց, ա՛յ Վարդան, վե՛ր կաց, իջիր բակ:

Ու վեր եմ թռչում, վազում եմ բակ՝ դեպի ավազանը: Մոտենում եմ, տեսնում, որ ավազանը դատարկ է. Սամսոն դային ջուրը բաց է թողել և ապակու կտորտանքներն է լցնում դույլի մեջ ու հետն էլ այնպիսի՛ հայհոյանքներ է ուղարկում



636-68

digitised by A.R.A.R.@



ջարդված շշերը ավազանի մեջ գցողների հասցեին. այնպիսի՜ հայհոյանքներ, որ ես չեմ կարող դրանք կրկնել:

Հետո ծերուկը նկատում է ինձ. շուռ է գալիս, հարցական նայում վրաս…

— Բարի լույս, Ստեփան դայի,— ասում եմ շփոթված:

—Բարի լույս, Վարդան,— տնքում է ծերուկը՝ ցույց տալով դույլը:—Չգիտե՞ս, թե ովքեր արած կլինեն:

Վարդա՞ն… Ամոթից ուզում եմ ավազանի ցեմենտե հատակի տակ մտնել, բայց ոչ մի տեղ էլ չեմ մտնում, այլ ասում եմ.

—Չգիտեմ, Ստեփան դայի:

Հետո կռանում եմ ու սկսում օգնել ծերուկին. ավազանի ցեմենտե հատակն եմ մաքրում, որպեսզի խիղճս էլ մի քիչ մաքրվի…

Իսկ ծերուկը չի հանգստանում.

—Ա՜խ, թե կիմանամ ովքեր են արել…

Իսկ ես հավաքում եմ ապակու կտորները, լցնում դույլի մեջ ու հիմա էլ ուզում եմ այդ ապակու կտորների հետ ինքս էլ մտնել դռնապանի դույլը, բայց դույլի մեջ էլ չեմ մտնում, այլ հարց եմ տալիս.

— Իսկ ի՞նչ գիտես, Ստեփան դայի, որ մի քանի հոգի են, ոչ թե մի հոգի:

Ես այդպիսիներին շատ լավ եմ ճանաչում,— քմծիծաղ է տալիս ծերուկ դռնապանը:—Սա մի հոգու գործ չի. մի քանի հոգով են եկել, մի քիչ էլ խմել են և առյուծ են կտրել…

Ու ես էլ քմծիծաղ եմ տալիս, բայց՝ դառը քմծիծաղ, կամ՝ մեղավորի, կամ՝ ինքնաքննադատական.

«Ուրեմն Ստեփան դային էլ այն կարծիքին է, որ, փաստորեն, նրանք առյուծն են, ես՝ նապաստակը»…

Հետո գալիս է բեռի Հայկը: Հարցնում է, թե Ստեփան դային ու՞մ վրա է զայրացած: Ծերուկը պատմում է նրան ջարդված շշերի մասին և ցույց է տալիս ապակիներով լիքը դույլը: Բեռի Հայկն սկզբում ապշում է, հետո՝ ցնցվում, հետո՝ զայրանում.

— Ինչպե՞ս թե…

Բեռի Հայկն այնպես է զայրանում, որ ես լրիվ համոզվում եմ, թե նա ինչ կաներ, եթե գիշերը լիներ դեպքի վայրում, այսինքն՝ կանգնած լիներ իմ տեղում…

«Այո, երեքին էլ կնետեր ջուրը»:

Հետո, կարծես թե, արևն էլ է զայրանում. իր ճառագայթներն ավելի ուժգին է թափում ինձ վրա…

Հետո գալիս են երեխաները: Ստեփան դային ու բեռի Հայկը խորհրդավոր նայում են իրար ու երեխաներին ոչինչ չեն ասում: Ստեփան դային բաց է անում ջրի ծորակն, ու ավազանը կամաց-կամաց սկսում է լցվել՝ սառը, մաքուր ու թափանցիկ ջրով: Եվ հատակն էլ՝ մաքուր-մաքուր…

Իսկ հետո՝ կեսօրին, արևն այնպիսի ուժեղ ճառագայթներ է թափում մեր բակի վրա, որ բոլորը, բացի ինձանից, նետվում են ջուրը՝ սառը, մաքուր ու թափանցիկ…

Իսկ ես չեմ լողանում, ոչ թե նրա համար, որ չեմ ուզում լողանալ, այլ, որովհետև իմ խիղճը մաքուր չէ, ու հատակս էլ չի երևում՝ հոգուս հատակը… Ես նստում եմ ավազանի եզրին՝ արևի տակ, ու նայում եմ ցեմենտե մաքուր հատակին…

«Գոնե Ստեփան դայուն ճիշտը ասեի… Նապաստա՛կ»:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



4330-Ա. Հ.

digitised by A.R.A.R.@



# ԹՈՒԹԱԿԻ ՎԻՇՏԸ

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Լուսիկը եթե չվախենար մայրիկի անվերջ նախատինքներից, իրենց ամբողջ բնակարանը կվերածեր կենդանաբանական այգու: Տանն արդեն փառավոր կերպով բնակվում են մի շուն, որին Ուտի են կոչում, Մուռան անունով մի մանր, մոխրագույն կատու, մի ղեղձանիկ ու մի թութակ: Թռչունները անուն չունեն:

Մայրիկը մասնագիտությամբ մանկաբույժ է, մի քիչ ներվային, շատ բորբոքվող, իսկ հայրիկն ինչ-որ նորաձևության ատելյեում աշխատում է որպես ավագ վարպետ. նյարդերն իրենց տեղում են, նրա համար միևնույն է՝ Լուսիկը տանը թութա՞կ կպահի, թե՞ ընձառյուծ:

— Երեխա է, Սաթենիկ,— երբեմն նա մեղմ դիմում է մայրիկին,— զվարճանում է...

— Զվարճանու՞մ է...— ծոր տալով արձագանքում է մայրիկը,— կատվի մազերը հավաքելով մեջքս կոտրվեց, իսկ դու գիտե՞ս, թե դա ինչպիսի ախտ է, այն էլ երեխաների համար: Մեզ մոտ առանց այդ էլ նեղվածք է, եթե մենք մի կարգին հողամաս կամ բակ ունենայինք, խնդրեմ, կարող էիր Հնդկաստանից փիղ էլ բերել:

Մուռան կատուն միայն տատիկին է սիրում: Երբ տատիկը շալը ծնկներին նստում է ճաշասենյակի գահավորակին, Մուռանը ցատկում է նրա կողքը, աչքերը ծալում, դժկամ ու մռայլ շուրջն է նայում և կարծես իր դժգոհ հայացքով ասում. «Վե՛րջ տվեք, մի՛ աղմկեք, ես կուշտ եմ և ուզում եմ ննջել»:

Մուռանին տանն առանձնապես չեն համակրում. անգործ-անբան կենդանի է, լավ ուտում է, լավ քնում կամ էլ նստում է պատից կախված ղեղձանիկի վանդակի տակ ու, շրթունքները լիզելով, չարացած նայում է վանդակի միջի ձողի վրա նստած թռչունին: Իսկ այդ ժամանակ ղեղձանիկը դայլայլում է մի չքնաղ երգ, որի իմաստը միայն Լուսիկն ու թութակն են հասկանում:

Որքան որ Մուռանն ինքնամփոփ է ու դժգոհ, այնքան Ուտի շունը մարդամոտ է: Նա բերծև ու բոխպական շան մի ծիծաղելի խառնուրդ է՝ բարակ դնչով, հաստ պոչով, ճակատին լուսնի նման կլոր մի խալ կա: Նրա համար միևնույն է՝ սիրու՞մ են իրեն, թե՞ չեն սիրում, փաթաթվում է եկող-գնացողի ոտքերին, ուրախ հաչում է ամեն ինչի վրա՝ մարդկանց, թռչունների, ճանճերի, ստվերների, նույնիսկ գահավորակի վրա ննջող Մուռանի վրա, իսկ այդ ժամանակ կատուն դեղին աչքերի մեջ զայրագին լայնացնում է սև բիբերը և կարծես ասում. «Հապա մոտ եկ»: Ուտին հո հիմար չի, որ մոտ գնա:

Լուսիկը թութակը նվեր է ստացել իր տարեդարձին: Արդեն չորրորդ ամիսն է, որ թութակը այդ տանն է ապրում և չորս ամսվա ընթացքում նա կարողացել է միայն մի խոսք սովորել. «բառուռև ձեզ»: Այդ երկու բառը նա արտասանում է տեղի-անտեղի՝ երբ մեկը ներս է մտնում կամ հրաժեշտ տալիս, երբ հոգնում է վանդակից և ուզում է, որ իրեն կանգնեցնեն առաստաղից կախված փայլուն կարմիր օղակի մեջ, երբ ցանկանում է, որ ղեղձանիկն սկսի իր դայլայլը, և կամ երբ տանտիրուհին զայրացած նչում է շան վրա. նա իր ողջ ցանկությունները, բավականությունները, դժգոհությունները ամփոփում է այդ երկու բառի մեջ՝ «բառուռև ձեզ»: Երբ նա արտասանում է այդ խոսքը, բոլորը ծիծաղում են, բացի մայրիկից:

— Լավ կլիներ, որ նա այդ երկու բառը սովորած չլիներ,— սրտնեղած ասում է մայրիկը,— գլուխներս տարավ...

Տանը միայն Լուսիկն է հոգ տանում այդ խայտաբղետ բառյակին. ժամանակին կերակրում է, մաքրում թռչունների վանդակները, երբ շունն ու կատուն հանկարծ գժտվում են իրար հետ՝ սաստում է նրանց, փորձում է նոր բառեր սովորեցնել թութակին, բայց բան դուրս չի գալիս. թութակը, ըստ երևույթին, այնքան էլ ընդունակ չէ և «բառուռև ձեզից» այն կողմ չի գնում:

Չնայած Մուռանի զուսպ և մռայլ բնավորությանը, պետք է ասել, որ նրանք հաշտ ու խաղաղ էին ապրում այդ հարկի տակ, բայց մի չարաբաստիկ օր Մուռանը հողմացրիվ արեց այդ երջանկությունը:

* * *

Գարնանամերձի մի տաք, պայծառ օր էր, երբ Լուսիկը դպրոցից տուն վերադարձավ, պայուսակը նետեց աթոռին, հագուստը շտապ փոխեց, որպեսզի իջնի բակ՝ խաղալու, հետո հիշեց, որ թռչունների վանդակները պետք է մաքրել ու նրանց



digitised by A.R.A.R.@

կում տալ. նա պատից իջեցրեց դեղձանիկի վանդակը և դրեց ճաշասեղանին, հետո բերեց վանդակի հատակի թիթեղը մաքրելու լաթն ու մի փոքրիկ աման ջուր. բաց արեց վանդակի դուռը և հենց այդ ժամանակ տատիկը նրան խոհանոցից կանչեց: Լուսիկը գնաց խոհանոց և միևնույն ժամանակ ներքևից, բակից, սկսեցին կանչել երեխաները.

— Լուսի՜կ, հե՜յ, Լուսի՜կ...

— Եկա՜, եկա՜,— խոհանոցից ձայն տվեց աղջիկը:

Լուսիկը մոռացավ վերադառնալ սենյակ:

Մուռան կատուն կարծես գետնի տակից հայտնվեց ու ինչպիսի՜ դիվային բնազդով հասկացավ, որ սենյակում մարդ չկա, դեղձանիկի վանդակն իջեցված է և վանդակի դուռը մնացել է բաց:

Իր վանդակի ձողին կանգնած թութակը ծղվեց տեղում, աչքերը, որոնց արտահայտությունը միշտ էլ թվում է անփոփոխ, ինչպես ասում են՝ «թութակային», լայնացան ու կարծես բացվեցին, որովհետև նա էլ իր թռչնային բնազդով զգաց մոտալուտ աղետը, և երբ Մուռանը, ապակե դռնակներին խաղացնելով ու բթածակերը շարժելով, նայում էր անօգնական, փոքրիկ, դեղին թռչունին, թութակը որքան որ ուժ ուներ ճչաց.

— Բառռռև ծի՛գ...

Այդ ժամանակ բակում խաղացող երեխաները մի այնպիսի աղմուկ էին բարձրացրել, որ թութակի ձայնն էլ հազիվ կլսվեր, դե, իսկ խոհանոցում ճաշ պատրաստող տատիկի ականջներն արդեն վաղուց էին դադարել ձայները զանազանելուց:

— Բառռռև ծի՛գ...

Կրկին ճչաց թութակը, երբ Մուռանը շուրջը նայեց, ցատկեց սեղանին և վանդակին մոտեցավ:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



Դեղձանիկն էլ բնազդաբար զգաց իր օրհասական վիճակը, երբ Մուռանի թաթը վանդակից ներս մտավ: Թռչունն սկսեց իրեն հարվածել վանդակի ճաղերին, ծվծվալ, և թութակն էլ ընդօրինակեց նրան, իրեն հարվածում էր վանդակի պատերին ու ճչում էր՝ որքան որ ուժ ուներ իր փոքրիկ կրծքում.

— Բառռռև ծի՛գ... Բառռռև ծի՛գ...

Հետո ամեն ինչ վերջացավ. Մուռանը ցատկեց սեղանից, կայծակի արագությամբ փախավ, և վանդակը մնաց թափուր:

Դեղձանիկի կորստյան սակայն պատմությունը չի ավարտվում...

Աշխատանքից եկել են հայրիկն ու մայրիկը, հիմա բոլորը հավաքվել են ճաշասեղանի շուրջը: Դեղձանիկի վանդակն այլևս կախված չի պատից, Լուսիկը տարել է պատշգամբ, իսկ ինքը աչքերը կախած, տխուր-տրտում նստել է սեղանի մոտ և չկամությամբ է ուտում:

— Այդքան ոչ ոք մեղք չունի,— նկատում է մայրիկը.— մոռացել ես փակել վանդակի դուռը, և թռչունը թռել գնացել է. պարզ բան է, ամեն մի թռչուն էլ ազատ երկինքն ու բաց դաշտերը կգերադասի քո այդ ճաղաշար վանդակից. ճաշդ կեր:

Հայրիկը հաստատում է.

— Մայրդ ճիշտ է ասում, Լուսիկ, եթե ծիտը փախել է, ապա դու ես մեղավոր, քո ցրվածությունն է մեղավոր. և ի՞նչ կարիք կա այդպես նեղսրտելու. հենց վաղը կգնանք, ես նորը կգնեմ քեզ համար ու ավելի լավը, ճաշդ կեր:

Այդ ժամանակ Մուռան կատուն և Ռափ-շունը նստել են միմյանցից հեռու՝ հատակին ու մարդկանց շարժվող բերաններին են նայում: Միայն թութակն է, որ գիտի զարհուրելի իրողությունը. կծկվել է իր վանդակի անկյունում և լայն բացված աչքերը, որոնց արտահայտությունը թվում է անփոփոխ, բայց որքա՞ն թախիծ կա կուտակված այնտեղ, նա միայն և միայն կատվին է հառել: Թե հիմա ի՞նչ է մտածում նա, ոչ ոք չի կարող կռահել. ո՞վ գիտե, գուցե մտածում է՝ մի հրաշքով իր փոքրիկ, կանաչ գլխի մեջ միանգամից կուտակվեին աշխարհի բոլոր լեզուներն ու այդ բոլոր լեզուներով նա ճչա.

— Դեղձանիկը չի՜ փախել, այս մոխրագույն հրեշն է նրան տարել ու կերել, բռնեցե՛ք նրան...

Հաջորդ օրը վանդակը նորից կախվեց ճաշասենյակի պատից և նրա մեջ դայլայլել սկսեց մի նոր դեղձանիկ: Դա բնական է, սակայն տնեցիների համար տարօրինակն այն է, թե ինչու Թութակը հանկարծ մոռացավ իր այնքան դժվարությամբ սերտած ու այնքան սիրած երկու բառը.

«Բառռռև ծի՛գ...»

# ՈՐԲԱՆՈՑԻ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Արևը իջնում էր գոմեշի մեջքի պես սև ու բարձր սարի ետևը: Սարի կապույտ ստվերը վաղուց ընկել էր գյուղի գետնամած, խղճուկ տների վրա, և շիկնած երկնքի տակ գյուղում սսկվել էին ձայները: Տարածվող մուգ կապույտ խաղաղության մեջ, գյուղից ելնող հին ճանապարհին թընդացին թմբուկների համարձակ զարկերը, և կապույտ բլուզներ հագած, նավթի լապտերները ձեռքներին, բոկոտն պատանիների շարքը համաչափ քայլով անցավ ոլոր-մոլոր ճանապարհով: Գյուղից հեռու, արդեն գիշերվա մութի մեջ բոցկլտաց, կայծեր արձակեց պատկոմների խարույկը: Քամին սարերից զով էր բերում, և նրանց մեջ ամենամեծը՝ կոլվար Արմենը խարույկի մոտ առաջին անգամ պատմեց իր ընկեր Անդոյի մասին.

— Ո՞վ էր Անդոն: Արևմտյան Հայաստանից փախած տղա էր՝ շիկավարս, կապտավուն, խելացի աչքերով: Հորն ու մորը թուրքերը տան մեջ այրել էին, Անդոն հրաշքով պրծել, հասել էր Ալեքպոլ... Այստեղ, ամերիկյան որբանոցում հանդիպեցի նրան, այստեղ մենք բարեկամացանք...

Խոշոր, վառվռուն, միամիտ աչքերը լայն բացած պատկոմները լըսում էին իրենց կոլվար Արմենին.

# Փոքրիկ տղան ու ձին

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Շատ ամիսներ չանցին*
*Ո՛չ արև, ո՛չ հրացան.*
*Հաղթանակող կարմիր զորքը*
*Գորկայով էլ անցավ:*
*Շատ նժույգներ վրնջացին*
*Մարտաժամին անեղ...*
*Նժույգների մասին էլ են*



*Մարդիկ հուշեր պահել:*
*Ասում են, թե գրոհելիս,*
*Պայթած լուսաբացին,*
*Հենց ճակատից խփված ընկավ*
*Կարմիր զինվորի ձին:*
*Լուռ արտասվեց զինվորը քաջ,*
*Ցավն էր սիրտը կտրում,*
*Դե, ինչ աներ, ձին այդ ուներ*
*Նաև փոքրիկ մտրուկ:*
*Ճիշտ է, նստեց զինվորը քաջ,*
*Նստեց ուրիշ մի ձի,*
*Բայց մտրուկի համար էլ նա*
*Հոգ տարավ առանձին:*
*Նա Գորկայում փնտրեց, գտավ*
*Մի լավ, շեկլիկ տղա,*
*Ասաց՝ ձին այս պահի՛ր, տղա,*
*Նրա հետ էլ խաղա:*
*Սիրեց տղան փոքրիկ ձիուն,*
*Սիրեց աշխարհի չափ,*
*Ձին էլ սիրեց այդ շեկլիկին,*
*Ոստնեց ու վրնջաց:*
*Անցան օրեր, հեռացել էր*
*Պատերազմը դաժան,*
*Ապրում էին տղան ու ձին*
*Ուրախ ու անբաժան:*
*Այդ օրերին Գորկայում էր*
*Մեծ Լենինը նաև,*
*Հիվանդ էր նա, հարկավոր էր*

digitised by A.R.A.R.@

# ՍԱՆ ԱՆԴՐՈՆ

*Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ*

— Հետո Անդրոն ծանոթացավ դեպոյի մի երիտասարդ բանվորի հետ: «Կան այդպիսի մարդիկ,— ասել էր բանվորը,— կոչվում են բոլշևիկներ: Նպատակ են դրել քշել դաշնակներին և հացը արդար բաժանել: Նրանց պետք է օգնել»: Եվ մի օր մենք տեսնում ենք. բոլշևիկները գրավել են կայարանը, «Վարդան զորավար» զրահագնացքի վրա կարմիր դրոշ են բարձրացրել, իսկ ժողովրդի մեջ լուրեր են պտտում՝ բոլշևիկների դեմ կռվելու համար Երևանից գալիս են դաշնակցական խմբապետ Սեպուհի զորքերը. Աղբաբայի կողմից գալիս է խմբապետ Պողոսի Արշակը...

Վառ երևակայություն ունեին պատկոմները, մայիսյան այդ հեռավոր գիշերվա մեջ բոցկլտացող խարույկի հրից էլ վառ, և նրանք պատկերացնում էին. ահա Անդրոն գիշերով ծածուկ փախչում է որբանոցից, անցնում է չարագուշակ լռության մեջ մրափող քաղաքի ամայի փողոցներով, պատերին քսվելով, որպեսզի իրեն չնկատեն, գնում է Անդրոն, որպեսզի գտնի բոլշևիկների ամենամեծին և իր օգնությունը առաջարկի: Ահա Անդրոն ոտնաձայներ լսեց, մտավ մոտակա դարբասը, մթության մեջ սպասեց, մինչև ոտնաձայները անցան: Նա պատերին քսվելով նորից անցնում է փողոցից-փողոց, վազում է մայթից-մայթ: Ահա նա հասնում է փողոցի անկյունին և հենց այստեղ դեմ է առնում դաշնակցական գիշերային պարեկին:

— Հե՜յ, լակո՛տ,— բղավում է մաուզերիստը,— հապա մո՛տ արի:

Փախչելը իզուր կլինի: Անդրոն մոտենում է նրանց:

— Ի՞նչ գործ ունես այս ուշ ժամին փողոցում,— հարցնում է նրանցից մեկը:— Չգիտե՞ս, որ արգելված է երեկոյան փողոցում երևալ:

Անդրոյին տարան միլիցիայի վարչություն, ներս հրեցին մի սենյակ: Իսկ այստեղ նստած էր ինքը՝ դաշնակցական միլպետ Եղիշեն: Նստած էր՝ գլուխն ափերի մեջ առած, մաուզերը սեղանին, օղու շշի մոտ դրած: Ոտնաձայներ լսելով՝ Եղիշեն բարձրացրեց գլուխը, քնկոտ, նայեց եկողներին՝ կարծես դժգոհ, որ իրեն թմբիրից հանեցին:

— Մենք սրան փողոցում գտանք, գողեգող գնում էր, թե ո՞ւր՝ չգիտենք,— զեկուցեցին պարեկները՝ Անդրոյին առաջ հրելով:

— Լավ, դուք գնացեք,— ասաց միլպետ Եղիշեն,— իսկ ես սրա հետ կխոսեմ:

Պարեկները գնացին, իսկ միլպետ Եղիշեն, գլուխը հազիվ բարձր պահելով, հարբած հայացքը Անդրոյին հառած, հարցնում է.



*Եվ նա տեսավ, որ Գորկայի*
*Կանաչներում խաղաղ,*
*Միասին են, միշտ միասին*
*Փոքրիկ ծին ու տղան:*
*Ու մոտեցավ նա տղային*
*Նայեց, ժպտաց երկար,*
*Փայտե թուր էր կախել տղան,*
*Դրել՝ կոմունարկա:*
*Ասաց.— Բարև քաջ զինվորին,*
*Ողջունում եմ սրտանց:—*
*Նայեց տղան բարի մարդուն,*
*Ինքն էլ բարի ժպտաց:*
*— Տեսնում եմ, որ պատրաստ-*
*վում ես*
*Արդեն գնալ կռիվ:*
*— Ճիշտ է, բայց ուշ ենք մեծանում,*
*Հա՛մ ես, հա՛մ ձիս, քեռի:*
*— Կմեծանա՞ս,— Իլյիչն ասաց,—*
*Դեռ կկռվես, տղա՛ս,*
*Դեռ քո ձայնից մեր թշնամին*
*Ահով պիտի դողա:—*
*Ու մեծացավ տղան մի պահ*
*Նրա աչքի առաջ,*
*Սուրաց հեռո իր նժույգով,*
*Սուրաց հողմաշառաչ:*
*Եվ դարերին հեռու՜, հեռու՜,*
*Եվ դարերին բոլոր,*
*Արև տարավ, արևային*
*Դրոշ ծածանելով:*
*Շատ ամիսներ չլռեցին*
*Ո՛չ արկ, ո՛չ հրացան,*
*Հաղթանակող կարմիր զորքը*
*Հողագնդո՞վ անցավ:*

*Նրան բուժել, նայել:*
*Ու սիրում էր Լենինն հաճախ*
*Գնալ զբոսանքի,*
*Բնության մեջ ավելի էր*
*Իրեն զգում հանգիստ:*



digitised by A.R.A.R.@



— Դու ո՞ւմ լակոտն ես...

— Որբանոցից եմ,— ասում է Անդոն:

— Իսկ ո՞ւր էիր գնում:

Այստեղ Անդոն լռում է:

— Բոլշևիկյան լրտե՞ս ես...— բղավում է եղիշեն,— լուրե՞ր ես տանում: Բոլշևիկներն ի՞նչ են ասել քեզ, հապա, ասա՛ ինձ,— և, Անդոյի օձիքից բռնած, այնպես թափ տվեց, որ աչքերից կայծեր դուրս թռան:— Ի՞նչ են ասել քեզ, ե՞րբ են մտադիր քաղաք մտնել, ե՞րբ են ուզում հարձակվել...

Իսկ Անդոն պարզապես չգիտեր ինչ ասեր:

— Լռո՞ւմ ես...— բղավեց միլպետ եղիշեն,— չե՞ս ուզում ասել...— և սեղանից վերցրեց մաուզերը ու թափահարեց Անդոյի աչքերի առջև.— ճակատիդ կպարպեմ, բոլշևիկի ձագ...

Բղավեց, բղավեց, վերջում գլուխը դրեց սեղանին ու խռմփացրեց. ըստ երևույթին այդ օրը շատ էր հոգնած: Նայում է Անդոն. սեղանին դրված է մաուզերը, և սենյակում ուրիշ մարդ չկա, և սենյակի դուռը բաց է: Ոտնաթաթերի վրա Անդոն մոտեցավ սեղանին, զգուշությամբ վերցրեց մաուզերը, զգուշությամբ բացեց դուռը, ելավ միջանցք ու՝ հայդե՜...

Կայարանը արդեն հեռու չէր: Հասավ կայարան, իսկ այստեղ կանգնած է, զրահագնացքը:

— Հե՜յ, ո՞վ ես,— մթան միջից հարցրեց ինչ-որ մեկը:

Եվ մի ուրիշը ձեռքը դրեց Անդոյի ուսին: Սրանք արդեն ուրիշ մարդիկ էին: Անդոն իսկույն հասկացավ. սրանք հենց բոլշևիկներն էին: Վերցրեցին Անդոյի ձեռքից մաուզերը և տարան զրահագնացք, իրենց ամենամեծի մոտ: Խելացի, ազնիվ աչքերով, լրջախոհ, միանգամայն կարգին մարդ էր այդ ամենամեծը:

— Իսկ այս զենքը քեզ մոտ ո՞րտեղից է,— հարցնում է այդ ամենամեծը:

— Այնտեղ, միլպետ եղիշեի մոտից թռցրի,— պատասխանում է Անդոն:

— Ճարպիկ տղա ես...— ասում է այդ ամենամեծը, իսկ նրա շուրջը խմբված զինվորները խնդում են:

— Իսկ ինչի՞դ է պետք զենքը:

— Ես նրանով դաշնակների վրա պիտի կրակեմ:

— Անունդ ի՞նչ է:

— Անդո:

— Ա՛յ, թե ինչ, Անդո,— ասում է բոլշևիկների ամենամեծը,— մեզ մոտ մնալը քեզ համար վտանգավոր է: Մենք դեռ վիճակի լիակատար տերը չենք: Իսկ այս մաուզերի համար շնորհակալություն: Վաղը մենք դրանով կկրակենք



## ՄԵՐ ՍԻՐԵԼԻ ԳՐՈՂԸ

*Դժվար թե գտնվի ձեզնից մեկը, որ ծանոթ չլինի Խաժակ Գյուլնազարյանին, կարդացած չլինի նրա վեպերը, վիպակները և պատմվածքները: Գյուլնազարյանը գրական փորձեր էր կատարում, երբ դեռ ձեզ պես պատանի էր և սովորում էր Օշականի Մեսրոպ Մաշտոցի անվան դպրոցում: Նա գրիչը վար չէր դնում, երբ մարտիկ էր Հայրենական մեծ պատերազմում: Նա նույն եռանդով գրում է և այժմ, երբ բոլորել է արդեն իր հիսուն տարին:*

*Խաժակ Գյուլնազարյանը շատ է սիրում երեխաներին և ամենից շատ գրում է նրանց համար: Նա գրեթե ամեն օր լինում է մեր խմբագրությունում և մեզ ուրախացնում իր նոր, հիանալի պատմվածքներով: Նա լույս է ընծայել մոտ երեսուն գիրք, որոնցից շատերը թարգմանված են այլ լեզուներով:*

*Եկեք, երեխաներ, շնորհավորենք մեր սիրելի գրողին՝ նրա ծննդյան հիսնամյակի առթիվ և նորանոր ստեղծագործական հաջողություններ ցանկանանք նրան:*

digitised by A.R.A.R.@

դաշնակների վրա ինչպես որ հարկըն է: Դրանում դու համոզված եղիր:

— Առավոտյան մի կին Անդոյին բերեց որբանոց,— պատմում է կոլվարը խարույկի շուրջը հավաքված պատկոմներին:— Բոլ-



շևիկների ամենամեծն էր ապացուցել, որ այդ կինը Անդոյին բերի որբանոց: Իսկ երեկոյան կայարանում կռիվը սկսվեց. լսում էինք, թե ինչպես են ճարճատում գնդացիրները, լուսամուտից տեսնում էինք, թե ինչպես քաղաքում խուճապահար դեսուդեն են վազվըզում դաշնակ մաուզերիստների զինված խմբերը: Բոլշևիկները կայարանում կռվում էին: Անդոն հրճվանքի մեջ էր, Անդոյի ուրախությանը չափ չկար: Անդոն ականջ էր դնում կայարանից հասնող գնդակոծության ձայներին և մեզ ասում էր.

— Հիմա այնտեղ իմ մաուզերով կրակում են դաշնակների վըրա:

...Քսան թվականի մայիսյան կարմիր օրերին հայ պատանիների ուրիշ շատ համարձակ, անձնազոհ արարքների մասին էլ պատմեց կոլվար Արմենը այդ գիշեր: Այն մասին, թե ինչպես պատանի սպարտակյան Գրիգոր Մանթաշյանը Դիլիջանի գավառական զինվորական վարչության շենքի վրա կարմիր դրոշ բարձրացրեց, այն մասին, թե ինչպես Ալեքսանդրապոլում պատանի գրաշար Կարո Խաչատրյանը իր ընկերների հետ, տպարանատիրոջից թաքուն՝ բոլշևիկյան թռուցիկներ տպագրեց, և ուրիշ շատ քաջարի պատանիների մասին: «Մենք երբեք չենք մոռանա սովետական կարգերի և ժողովրդի ազատության համար մարտնչած մեր ընկերների գործերը»,— ասացին պատկոմականները՝ մայիսյան մութ գիշերվա մեջ բոցկլտացող խարույկի շուրջը հավաքված:

Մոտակա սարերից եկող հովն արդեն ցուրտ էր բերում: Նրանք դեռ երկար նստեցին խարույկի շուրջը և մութ սարերի միջև դեռ երկար հնչում էին նրանց երգերը: Իսկ հետո պատկոմները շարք կազմած քայլեցին դեպի գյուղ տանող ճանապարհով՝ կարմիր դրոշով, վառ լապտերներով և երգեցին.

Պայքար մենք կմղենք
Հին աշխարհի դեմ,
Ով համարձակ է՝
Թող գա մեզ ընդդեմ...

Հեռվում, խավարի մեջ քնած էր գյուղը՝ գետնամած խրճիթներով. խղճուկ, մութ: Եվ, սակայն, այն հեռավոր գիշերվա մեջ պատկոմները հավատում էին, իրենք կլուսավորեն այդ խրճիթները, իրենք դեռ կկառուցեն բազմահարկ տներ ու պալատներ և ուղիղ, լուսավոր փողոցներ: Նրանք գիտեին՝ զուր չեն մաքառել իրենց հայրերն ու եղբայրները և նրանց արյունը զուր չի թափվել:



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

*Մինչև մեր թաղի հին տների քանդելը, ընդամենը տաս տարեկան էր: Կարմրագույն չստեր էր հագնում ու «կլաս» էր խաղում սալահատակ մայթին: Ծնկները միշտ քերծված էին, երեսն արևավառ, որովհետև «կըլաս»-ից շուտ էր ձանձրանում, մեզ հետ իջնում էր Հրազդանի ձորը՝ լողանալու, մեզ հետ ֆուտբոլ էր խաղում և մեզ հետ էլ ցոգոլ էր թոցնում խորհտնտեսության այգիներից:*

*Աղջիկներից ոչ մեկը մականուն չուներ: Մականուն ունեին միայն տղաները, ոչինչ չնշանակող, անհասկանալի մականուններ, օրինակ՝ Ճոն, Պալայց, Գրենգուտ և այլն: Իմ մականունը (ասեմ, միևնույնն է, իմանալու եք) «Հրե գունդ» էր և առաջացել էր իմ «աստղաբաշխական ունակություններից», ինչպես ձեռ առնելով ասում էր Կարոն, մեր թաղի բոլոր երեխաների առաջնորդը:*

*Այսպես, բոլոր տղաները մականուններ ունեին, միայն Կարոն մականուն չուներ, քանի որ մեկ-մեկ կարող էր բոլորիս էլ հաղթել: Իսկ աղջիկները մականուններ չունեին. ավելի շուտ ունեին մի ընդհանուր մականուն՝ «Երկարամազ», որ, իհարկե, դարձյալ Կարոյի հնարածն էր: Աղջիկներից միայն նա իսկական մականուն ուներ և կարծես թե նույնիսկ քիչ հպարտանում էր դրանով: Ասենք, նրա մականունն այնպիսին էր, որ կարելի էր հպարտանալ. նրա մականունը «Դնքսեմ» էր՝ «Դնքսեմ Սաթիկ», որ առաջացել էր նրա արտակարգ մարտական բնավորությունից: Սա-*



digitised by A.R.A.R.@



թիկն ուժեղ էր և իսկապես կարող էր դընքսել ուզածդ երեխային. ինձ թվում է, թե նրանից վախենում էր նույնիսկ մեր «առաջնորդ» Կարոն:

Սաթիկը ոչ մի բանից երկյուղ չուներ: Մի անգամ, երբ ես, Կարոն ու նա երեկոյան վերադառնում էինք Կոմունարների այգուց, փողոցում մեզ վրա մի շուն հարձակվեց: Ես «նահանջեցի», այսինքըն, ճիշտն ասած, փախա: Կարոն նստեց: Նա հետո բացատրում էր, թե ինչ-որ տեղ կարդացել է, որ շների հարձակման դեպքում պաշտպանվելու ամենալավ միջոցը նստելն է: Իսկ Սաթիկը... Ես բավական հեռու թաքնվել էի էլեկտրասյան հետևը և չէի տեսնում, թե ինչ է կատարվում «ճակատամարտի» վայրում: Կարոյի ու Սաթիկի ձայնը չէր լսվում. միայն շունն էր հաչում: Հետո նա աղիողորմ կաղկանձեց: Հետո նրա ձայնը հեռացավ, հեռացավ ու կորավ մեր թաղի մութ ոլորաններում: Թե ինչ էր արել Դնքսեմ Սաթիկը, ես այդպես էլ չիմացա...

Ու միակ բանը, որից վախենում էր, սպիտակ խալաթն էր: Սպիտակ խալաթը նրա համար առաջին հերթին նշանակում էր սրսկելու ասեղ:

Դպրոցում, երբ բոլոր աշակերտներին տիֆի դեմ սրսկում էին, Սաթիկն աննկատ դուրս ծլկեց պատուհանից: Հետո բժիշկներն ու քույրերն սկսեցին շրջել բակից-բակ ու բոլորին անխտիր «ծաղիկ» պատվաստեցին: Մի տեսնեիք, թե ոնց էր խոճկորի նման ճղճղում, երբ մայրն ու քույրը բռնել էին, իսկ բժշկուհին գրչածայրի նման փոքրիկ մի բանով խաչեր էր քաշում նրա թևին: Դժվար թե ցավեր, բայց բժշկուհու գնալուց մի ժամ հետո էլ, բակի թթենու տակ նստած, նա դեռ ցնցվում էր անձայն հեկեկանքից, ու Կարոն, նրան մխիթարելու համար, ստիպված եղավ զոհել, այսինքն՝ նրան նվիրել իր թիթեղե «սպորտային» ղըլղան սուլիչը:

* * *

Թաղը քանդեցին: Մեր թաղի հին տնակների տեղում նոր բարձրահարկ շենքեր էին կառուցելու: Թաղը քանդեցին, ու մենք ցրվեցինք քաղաքով մեկ: Մեկն «Արաբկիր» կոչվող թաղամաս տեղափոխվեց, մեկը՝ Նորք... Կարոյենք առհասարակ Երևանից հեռացան: Նրա հայրիկը գործի անցավ Կիրովականում:

Իրար կորցրինք, բայց տխրելու ժամանակ չունեցանք, քանի որ ամեն մեկս իր տեղում նոր ընկերներ գտանք: Առաջացան նոր մականուններ, երևան եկան նոր «առաջնորդներ», այսինքն՝ այն տղաները, որոնք մեկ-մեկ կարող էին հաղթել շրջապատի բոլոր երեխաներին:

Իմ մանկությունը շարունակվեց մի մեծ շենքի բակում: Ես այդտեղ էլ «առաջնորդ» չէի և, իհարկե, բոլորի նման իմ մականունն ունեի, որ այս անգամ չեմ ասի, քանի որ իմ պատմության համար այդ մականունը կարևոր չէ և բոլորովին էլ կարիք չկա, որ դուք իմանաք:

Մականունը մականուն (մի քիչ վիրավորական, քանի որ կասկածի տակ էր առնում իմ սրտոտությունը), բայց ես հաջողությամբ ավարտեցի միջնակարգ դպրոցը, հետո մեկնեցի ռազմաճակատ և, երբ պատերազմն ավարտվեց, իմ շքանշաններն ու մեդալներն այնքան էլ քիչ չէին (հիմա կասեք, թե պարծենում եմ): Պատերազմից հետո ամուսնացա աշխարհի ամենալավ աղջկա հետ, աշխատանքի անցա աշխարհի ամենալավ գործարանում, ունեցա աշխարհի ամենալավ



երեխաները՝ Մուշեղ ու Մարգարիտ, և դարձա աշխարհի ամենաերջանիկ մարդը, մինչև...

Քարտուղարուհին հանկարծ մտավ մեր արտադրա-



digitised by A.R.A.R.@

կան տեղամասը ու.

— Ընկեր Մազմանյան, հեռախոսի մոտ:

Գնացի:

— Ընկեր Մազմանյա՞նն է:

— Ես եմ:

— Ձեր երեխան գտնվում է մեզ մոտ, վեցերորդ հիվանդանոցում:

Լեզուս կապ ընկավ, ոչինչ չկարողացա ասել: Զանգահարողն ըստ երևույթին հասկացավ վիճակս:

— Մի՛ անհանգստացեք,— ասաց,— վիրահատությունը հանձնարարված է ամենալավ վիրաբույժին:

— Ի՞նչ երեխա, ի՞նչ եք ասում,— վերջապես ճչացի ես:

— Ձեր երեխան,— հանդարտ ասաց մարդը,— Մարգարիտ Մազմանյանը: Քիչ առաջ բերեցին շտապ օգնության մեքենայով մանկապարտեզից: Աղիքի ոլորում է, հարկավոր է անմիջապես վիրահատել, նրան արդեն տարել են վիրահատման սենյակ:

Ես վար գցեցի լսափողը: Տասը րոպե հետո հիվանդանոցում էի: Բանվորական արտահագուստով, ձեռքերս մրոտ, իհարկե, ինձ վերև չէին թողնի:

—Վիրահատում են.— ասաց հերթապահը,— մեզ



մոտ փրական հիսուն հոգու վիրահատում են:

— Իմ երեխան...

— Այսօր ձեր երեխան, վաղը մեկի մայրը, մյուս օրը...

— Լսեք...

— Առհասարակ չի կարելի, ուր մնաց այդ շորերով, այդ ձեռքերով...

Հերթապահն ինձ աշխարհի ամենադաժան մարդը թվաց:

— Ա՛յ մարդ, բա դու խիղճ չունե՞ս,— սրտնեղած ասացի ես:

— Մի՛ գոռա, ընկեր ջան, մի՛ գոռա,— ասաց հերթապահը:

Իմ բախտից հենց այդ ժամանակ հիվանդանոցի գլխավոր բժիշկն իջնում էր աստիճաններով:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց:

—Ընկեր Եսայան,— սկսեց հերթապահը,— այս քաղաքացին...

— Աղջկանս այս վայրկյանին վիրահատում են,— կտրեցի ես:

— Մազմանյա՞նն եք:

— Այո:

— Լավ, գնանք ինձ հետ:

Ես բժշկի հետ երկրորդ հարկ բարձրացա, իսկ հերթապահը ետևիցս զարմանալի մեղմ ասաց.

— Անհոգ մնա, ընկեր ջան, մեր Գրիգորևնան էդպիսի՛ վիրահատություններ է արել:

Զարմանալի էր, ախր դաժան մարդ էր թվում այդ հերթապահը:

Գլխավոր բժիշկն ինձ տարավ իր առանձնասենյակը: Այդտեղ ես լվացվեցի ու բանվորական արտահագուստիս վրայից վրաս գցեցի սպիտակ խալաթը:

— Մեկ է,— ասաց գլխավոր բժիշկը,— վիրահատության սենյակ գնալ չեք կարող, իսկի ես էլ իրավունք չունեմ:

— Բժիշկ, իսկ ի՞նչ է եղել:

— Մանկապարտեզում խաղալիս երեխան վայր է ընկել: Կասկածում ենք, թե աղիքի ոլորում է կամ գուցե...— նա մի պահ կանգ առավ,— չէ, Գրիգորևնան ժխտում է կույր աղիքի սուր բորբոքման հնարավորությունը:

Ես տեղս նստել չէի կարողանում: Իսկ բժիշկը հոգնած ու սովոր մարդու սիրալիրությամբ ասում էր.

— Մի՛ անհանգստացեք, ամեն ինչ բարեհաջող կլինի, Գրիգորևնան ամենափորձված վիրաբույժներից է, թե իմանաք քանի՛-քանի՛ մարդու կյանք է փրկել...

— Բայց...

— Ես սպասում էի ձեզ, վիրահատությունից հետո Գրիգորևնան այստեղ կգա, մի՛ անհանգստացեք...

Հեշտ է ասել՝ մի՛ անհանգստացեք: Այնտեղ մորթում են երեխայիս, ինչ-որ Գրիգորևնա, գոնե տղամարդ լիներ վիրահատողը, մտածում էի ես առանձնասենյակի մի պատից մյուսը քայլելով, հեշտ է ասել՝ մի՛ անհանգստացեք:



digitised by A.R.A.R.@

Ինձ թվաց, թե տարի անցավ, մինչև վերջապես առանձնասենյակի դուռը բացվեց ու ներս մտավ սպիտակ խալաթով միջահասակ մի կին:

— Սխալվում էիք, Սերգեյ Բարեղամիչ,— ինձ չնկատելով ասաց նա,— կույր աղիքի բորբոքում և այն էլ ինչպիսի՛, երկու ժամ ուշանայինք...

— Հայրն է,— ասաց գլխավոր բժիշկն ինձ ցույց տալով:

Ես մոտեցա: Նա ձեռքը մեկնեց: Մենք նայեցինք իրար ու հանկարծ.

— Դնքսեմ Սաթի՛կ:

— Հրե գո՛ւնդ...

Գլխավոր բժիշկը զարմանքից չռել էր աչքերը, նա չէր կարողանում հասկանալ, թե ինչ պատահեց երկու, կարծես թե, խելքը գլխին մարդկանց. չգիտես, ծիծաղո՞ւմ են, թե՞ լաց են լինում, ինչ-որ անհասկանալի բառեր են ասում իրար՝ դնքսեմ, գունդ...

Հետո իրար ձեռք բռնած՝ նստեցինք բազմոցին:

## ԻՄ ԽՆՁՈՐԵՆԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Իմ խնձորենին երեք տարեկան
Դողդոջ ստվերով թեքվել է հողին.
Խշշում է, խշշում ձայնով դուրեկան,
Մեղմ օրորում է ճյուղերը դեղին:
Նա լուսաբացին նազանքով շշում,
Ծծում է հողի մաքրությունը տաք.
Աշնան ցերեկն է նրան համբուրում
Եվ արև թափում ճյուղերին բարակ:
Իմ ծառը դալար մեր դռան առաջ
Առաջին անգամ խնձոր է բռնել,
Նա երազանքն է իմ երեք տարվա
Իր բուրմունքի հետ տողերին խառնել:
Ես շոգ օրերին ջրել եմ նրան,
Զովություն տվել աղբյուրից մոտի,
Սարյակի բույնն եմ ամրացրել վրան,
Որ նա իմ ծառի թրթուրներն ուտի:
Իմ ուսուցիչը պապս է այգեպան,
Պապս՝ բնության բարեկամն անքեն.
Նա՛ է ինձ օգնել, պատմել ամեն բան,
Այդ նա՛ է ասել, որ ծառեր տնկեմ:
Նրա խորհրդով, փորձով եմ ես միշտ
Հետևել փոքրիկ իմ տունկի աճին,
Դրա համար էլ նրան եմ տալիս
Իմ ծառի կարմիր խնձորն առաջին:

## ՄԵՆՔ ՆՐԱՆ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Ես նոր եմ սովորել բարձրանալ մեր բակի միակ ծառը: Մեր տունը կանչում է:

— Ծինգ-ծլա՜նգ...

Մեր տան հողե հատակին հիսուն փոս կա ջրով լիքը:

— Ծինգ-ծլա՜նգ...

Հիսուն փոս: Գուցե շատ է, բայց ես միայն մինչև հիսունն եմ կարողանում համրել: Համրում եմ մեր տնեցիներին՝ մեկ, երկու, երեք: Երեք հոգի ենք. մայրս՝ մեկ, քույրիկս՝ երկու, ես էլ՝ երեք:

Համրում եմ նաև մեր տան գրքերը: Նրանք միշտ թաց են: Համրում եմ միայն ցերեկը: Գիշերները լույս չի լինում մեր տանը, ճրագ չունենք: Տխրում եմ, որ մեր գրքերը քիչ են, ընդամենը հինգ հատ, հինն էլ թաց: Իսկ հավ չունենք, որ համրեմ, այծ ու ոչխար էլ չունենք: Համրում եմ նաև մեր Կոկոշ շանը:

— Մեկ:

Բայց մեկը չէ մեր Կոկոշին մեկ համարելը: Նա ավելի խոշոր է, քան ես ու քույրս միասին: Քույրս փոքր-փոքր է ու առանց կռանալու անցնում է Կոկոշի փորի տակով: Ես կանգնում եմ Կոկոշի մոտ ու բերանս հազիվ է հասնում նրա մեջքին: Կոկոշի գլուխը բրդոտ է: Երբ նա կանգնում է հետևի ոտքերի վրա, դառնում է մի ուղտ:

Հիմա կասեք, թե ես որտե՞ղ եմ ուղտ տեսել: Մենք ուղտ չունենք, իհարկե: Բայց մեր տունը գյուղի ծայրին է: Ուղտ տեսել եմ մեր տան կողքի մեծ ճանապարհին:

Գարնանը մեր տան մոտով քոչ է գնում՝ հիսուն ուղտ, դաշտը լիքը ոչխար, ինչ որ սպիտակ թուխպ: Գնում են խրխնջացող ձիեր՝ հիսուն հատ, բառաչող կովեր՝ էնքան շատ, որ տափը չի երևում, հիսունից էլ շատ: Դրանց հետ էլ մեկ հիսուն, երկու հիսուն, տասը հիսուն շուն...

Հիսուն օր քոչ է գնում մեր տան մոտով: Գարնանը գնում, հա գնում է՝ սար ու ձոր բռնած, աշնանը ետ գալիս, հա գալիս, էլի սար-ձոր բռնած:

Երբ քոչը անցնում է, ես ու մեր Կոկոշը կանգնում ենք մեր բակի ծայրին ու նայո՜ւմ, նայում: Քոչի հետ քոչվորներ էլ կան՝ մարդ, կին, երեխա, հիսունը՝ ուղտի վրա, քառասունը՝ ձիու, երեք հիսուն էլ՝ ոտքով: Բոլորն էլ կանգ են առնում, նայում մեր շանը:



digitised by A.R.A.R.@

# ԱՅԼԵՎՍ ՉՏԵՍԱՆՔ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Վա՜հ, էս էլ շո՞ւն է: Չէ, շուն չի, առյու՛ծ է, առյուծ:

Քուչից հիսուն շուն եկան մեր շան վրա: Ես վախից բարձրացա մեր միակ ծառը: Իսկ մեր Կոկոշը ծառ բարձրանալ չգիտի: Նա տեղից չշարժվեց, երբ հիսուն շուն եկան իր վրա: Միայն կուչ եկավ, իբր թե վախենում է: Երբ քուչի շները աղմուկ-հաչոցով վրա տվին նրան, նա ծառս եղավ կատաղած: Մեկի փորը թափեց, չորսին այնպես նետեց գլխի վրայով, որ հազիվ վեր կացան, կլանչելով փախան: Մեկին գցեց տակը, քթին չոքեց ու խեղդեց:

Հիսուն քուչվոր գուգուալով, հարայհրոցով օգնության եկան իրենց շներին: Բայց էլ ի՞նչ: Մեր Կոկոշն իր գործն արել պրծել էր: Մարդիկ շշմած, զարմացած նայեցին նրան:

— Այ մարդիկ, էս շուն չի, առյու՛ծ է, առյուծ:

Այդ օրերին մեր տան մոտ միշտ սատկած շուն էր լինում:

* *
*

Մի օր էլ, երբ մեր Կոկոշը մի տասը շուն քոլոլել, գցել պրծել էր, մի քուչվոր ծերունի ձիու վրայից ինձ ասաց.

— Այ երեխա, մի հորդ կանչիր:

Ես վիզս ծռեցի.

— Հայր չունեմ:

— Մորդ կանչիր:

Կանչեցի: Մայրս խեղճ-խեղճ եկավ, կանգնեց ծերունու առջև: Ծերունին փող հանեց գրպանից, մեկնեց մորս.

— Էդ շունը ծախիր ինձ, աղջիկս:

Մորս աչքերը շլվեցին: Ախր նա երևի փող չէր էլ տեսել: Ախր մենք քաղցած էինք և մեր տանը մի բուռ գարի չկար, որ մայրս աղանձ աներ, տար մեզ: Ծերունին փողը խոթեց մորս բուռը.

— Վերցրու, այ աղքատ: Հինգ փութ ալրի գին է:

Մայրս լաց եղավ.

— Բա շո՞ւնս:

— Շունը քո ինչի՞ն է պետք, այ գրկված, — ասաց ծերունին: — Գոմեշնե՞րդ է պահպանում:

Ծերունին քուչից մի այծ բռնեց՝ ուլը ետևից: Այծն ու ուլը քշեց դեպի մեզ:

— Էս էծն էլ քեզ: Հիմա շունդ կտա՞ս, այ աղջի:

Մայրս էլի լաց եղավ.

— Կտամ, ապեր: Դռան ընկած գնում ենք: Գարան ունե՞ս:

Ծերունին ձիու խուրջինից պարան հանեց: Մայրս պարանը գցեց մեր Կոկոշի վզին, դունչն ու աչքերը լաթով կապեց ու տվեց ծերունուն: Նա շանը գցեց մի ուրիշ ձիու վրա, կապեց ու գնաց: Ես լաց եղա.

— Վա՜յ, Կոկոշ, վա՜յ....

Մայրս ծեծեց ինձ.

Ձայնդ կտրիր: Բա քեզ ու քրոջդ ինչո՞վ



digitised by A.R.A.R.@

պահեմ։ Հրես շունը մի ծնած այծ դառավ, հինգ փութ էլ հաց։ Հա՜ց, հասկանո՞ւմ ես, հաց։

Ամբողջ օրը մորս ծեծած տեղերը ցավում էին։ Բայց դե մենք արդեն մի ծնած այծ ունեինք՝ ուլը տակը և հաց։ Ես այծն ու ուլը տարա գետափին արածացնելու։

— Չթողնես ուլն ընկնի այծի տակը,— խրատեց մայրս։— Կաթը կծծի։

Ամեն առավոտ մայրս այծի կաթ էր տալիս ինձ ու քրոջս, նաև մի-մի ճոթ հաց։ Երեկոները նույնպես՝ մի-մի ճոթ հաց և թանով սպաս։ Երբեմն մորս հարցնում էի.



— Հիմի տեսնես մեր Կոկոշը ի՞նչ է անում։

Մայրս երեսը շուռ էր տալիս։ Նրա ձայնի մեջ լաց կար.

— Դե, հիմի նոր տիրոջը սովորած կլինի։

* * *

Մի երեկո, երբ ես այծն ու ուլը տուն բերի, մեր բակում թաքնած տեսա Կոկոշին։ Նա ուրախ-ուրախ թռավ դեպի ինձ ու սկսեց լիզել երեսս։ Ես գրկեցի նրա գլուխը։

— Կոկո՜շ ջան, ա՜յ Կոկոշ ջան։

Մայրս լացուկոծ արեց, բարկացավ Կոկոշի վրա.

— Ինչի՞ ես փախել եկել, անիծված։ Բա որ ավերը գա էծը տանի՞։

Ինձ թվում էր, թե Կոկոշն էլ է լաց լինում։ Դե, թող երկուսն էլ լաց լինեն, ես ուրախ եմ, որ Կոկոշը եկել է։ Առավոտյան մայրս ինձ արթնացրեց դեռ լույսը չբացված.

— Էծը տար բերծերի թարատցում պահիր։ Որ տերը գա, ասելու եմ՝ քու էծն էլ է փախել։

Բայց այծատերը չեկավ ոչ այդ օրը, ոչ էլ մի ուրիշ օր։

Էլի քոչ էր գնում մեր տան մոտով։ Էլի քոչի շները հարձակվեցին մեր Կոկոշի վրա։ Կոկոշը քոչի շներից մեկի ոտքը պոկեց, մյուսի՝ ականջը, մեկին էլ, իր սովորությամբ խեղդեց։ Ողջ քոչը հավաքվեց մեր տան գլխին.

— Ա՛յ մայրիկ, էս շուն չի, առյո՜ւծ է, առյուծ։ Մի ջահել հովիվ մորս ասաց.

— Ի՞նչ տամ, որ շունդ ծախես ինձ։

Մայրս երկար-բարակ չմտածեց։ Ուզում էր Կոկոշից ազատվի, որ ավերը չգա իր էծը տանի։ Նա խեղճ-խեղճ ասաց.

— Որբերի տեր եմ, ախպեր։ Հինգ փութ ալրի փող տուր, տար։

— Փո՞ղ,— ծիծաղեց հովիվը։— Փող հովվին ո՞րտեղից։

— Դե, ուրեմն,— ասաց մայրս,— մի էծ տուր իր ուլով։

Հովիվը մի ծնած այծ բերեց հոտից, իր ուլի հետ ու քշեց մեր բակը։ Էլի թոկ դրին Կոկոշի վզին, էլի աչքերն ու դունչը կապեցին ու բեռան վրա դնելով՝ տարան։ Այս անգամ ես լաց չեղա։ Նախ, որ արդեն երկու այծ ունեինք, երկու ուլ, ապա համոզված էի, որ մեր Կոկոշը նորից կփախչի, տուն կգա։

* * *

Եկավ։ Մի շաբաթ էլ չէր անցել, որ եկավ։ Մայրս ցախավելով ծեծեց նրան.

— Ինչի՞ ես եկել, ա՛յ տերը մեռած։ Բա որ էծատերերը գան, էծերը տանեն, էս որբերին ես ո՞նց պահեմ։

Չգիտեմ, Կոկոշը հասկանո՞ւմ էր մորս լեզուն, թե չէ, բայց նա հեզ ու խոնարհ լիզում էր նրա ձեռքերը։

Առավոտյան մայրս Կոկոշի վզին թոկ դրեց, քաշեց, կանգնեցրեց քոչի ճանապարհին.

— Է՜յ, քոչվորներ, էս շունս ծախում եմ.



digitised by A.R.A.R.@



Քոչվորները խռնվեցին մեր շուրջը։ Զարմացան, որ նման շուն ծախում ենք։ Մայրս բրբռվեց.

— Երկու որբի տեր եմ։ Նրա՞նց պահեմ, թե՞ սրան։

Մի քոչվոր էշի մի քուռակ տվեց մորս ու մեր Կոկոշին տարավ, էլի աչքերն ու դունչը կապոտած, էլի վզին թոկ գցած։ Այս անգամ էլ ես ուրախացա էշի քուռակով։ Ես ու քուռակը միասին կմեծանանք, փայտ կբերենք անտառից, խոտ էլ։ Բացի դրանից, հաստատ գիտեի, որ Կոկոշը նորից կփախչի, ետ կգա։ Անպայման կգա։

Այծերն ու քուռակն առաջս արած, ողջ օրը պահում էի գետափի կանաչներում։ Քուռակը սև էր, դունչը՝ սպիտակ։ Ես նրան քաշում էի մի մեծ քարի մոտ, բարձրանում քարին ու այնտեղից նստում նրա մեջքին։ Այնքան լա՜վ էր։ Ախր մենք հիմա էշ էլ ունեինք, սոված չէինք։ Այ, ես քու ջանին մատա՜ղ, Կոկոշ։ Դու մեզ կշտացրիր։

Աչքս ճանապարհին էր։ Երեկոները շտապում էի տուն։

— Մամի, Կոկոշը չի եկե՞լ։

— Չէ։— Մորս ձայնի մեջ կարոտ կար։— Կգա, ...ի՛։

Չեկավ։ Ողջ ամառ աչքս մնաց ճանապարհին։

Ողջ ամառ մտածում էի Կոկոշի մասին։ Մի բանից էի վախենում՝ Կոկոշը հո չի՞ մեռել, հո նրան մի բան չի՞ պատահել։ Աղաչում էի երկնքին.

— Աստված ջան, աստված, դու պահիր մեր Կոկոշին։

* * *

Թաց աշուն էր։ Ամպերն իջել էին հենց մեր տան կտուրին։ Մանր անձրև էր մաղում։ Քոչը սարերից վերադառնում էր դեպի տաք դաշտերը։

Մի թաց առավոտ, երբ այծերն ու քուռակը տնից հանած տանում էի գետափ, մեր բակը մի ձիավոր մտավ։ Ես սաստիկ վախեցա։ Դա այն ալևորն էր, որ առաջինը գնեց մեր Կոկոշին։ Ես փաթաթվեցի նրա տված այծի վզովը։ Ալևորը մեղմ ժպտաց.

— Մի՛ վախենա, տղա ջան, ես միայն եկել եմ իմանալու, ձեր շունը տո՞ւն է եկել, թե՞ չէ։

— Չէ,— սուտ ասելուց կարմրեցի, կմկմացի ես։— Էն սուրբ խաչը, չի եկել։

— Վնաս չունի,— ասաց բարի ալևորը։— Վնաս չունի։

Նա ձիու գլուխը թեքեց, գնաց։ Ինչ լավ էր, որ գնաց։ Ինչ լավ ալևոր էր։

Երեք օր հետո, երեկոյան, երբ այծերն ու էշի քուռակը բերել արել էի մեր տուն՝ մենք միասի՛ն էինք ապրում, հանկարծ բակից լսեցինք մեր Կոկոշի ձայնը.

— Հաֆ, ո՜ւ...

Մենք թռանք դուրս։ Մայրս աղաղակեց.

— Կոկո՜շ, ջանի՜դ մատաղ, Կոկո՜շ...

Կոկոշը ետ-ետ գնաց, նույնիսկ ատամ ցույց տվեց մեզ։ Նա հոտոտեց իր բույնը, մի երկու անգամ էլ «հաֆ-ո՜ւ...» արեց և, պոչը խոթելով ոտքերի արանքը, դուրս եկավ մեր բակից ու սլացավ հեռացող քոչի ետևից։ Ես զռացի.

— Կոկո՜շ, հե՜յ...

Կոկոշը ետ չնայեց։ Մայրս գոգնոցով սրբում էր աչքերը։

— Կոկո՜շ, հե՜յ...

Մենք նրան այլևս չտեսանք։






digitised by A.R.A.R.@

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



# ԵԹԵ ՔԵԶ ԸՆՏՐԵԼ ԵՆ ՕՂԱԿԱՎԱ՛Ր

Եթե քեզ օղակավար են ընտրել, դու պետք է լավ կատարես քեզ վրա դրված պարտականությունները, օգնես պիոներներին՝ կատարելու հանդիսավոր խոստումները և պիոներական օրենքները: Միայն այդ դեպքում քո օղակը համերաշխ կլինի:

Օղակը բաղկացած է լինում 5—6 պիոներներից, որոնք ապրում են իրար շատ մոտ, նույն շենքում կամ հարևան շենքերում: Նրանք ամեն օր միասին են խաղում, միասին վերադառնում են դպրոցից, կինո են գնում, գրադարան, մի խոսքով՝ ընկերություն են անում:

Այդպիսի օղակում հեշտ է օգնել ընկերոջը, ցանկացած ժամանակ այդ օղակը կարող է զբաղվել բակի փոքր երեխաներով, մասնակցել բակի և փողոցի բարեկարգմանը:

Պատահում է նաև, որ օղակը կազմվում է ձևականորեն, ըստ դասարանի նստարանների շարքերի: Օղակավարը պետք է անպայման իմանա, թե ինչով է սիրում զբաղվել յուրաքանչյուր պիոներ, նրանցից ամեն մեկը ինչ գիտի և ինչ կարող է անել: Պիոներները շատ լավ նշանաբան ունեն՝ «Սովորեցիր ինքդ, սովորեցրու և ընկերոջդ»: Օղակավարն էլ պետք է այնպես անի, որ մեկի իմացածը սովորեն բոլորը: Ասենք թե մեկը դրոշմանիշներ է հավաքում: Այնպես արա, որ նա իր հավաքածուն ցույց տա երկու-երեք երեխայի և նրանց էլ ընդգրկի բարեկամության ակումբին կից գործող ֆիլատելիստների խմբակը: Կամ էլ, եթե մեկը մարմնամարզությամբ է զբաղվում, թող նա էլ դառնա օղակի ֆիզղեկը և ամեն օր առավոտյան մարմնամարզական վարժությունները նա անցկացնի: Այդպես յուրաքանչյուր պիոներ կզգա, որ իր շնորհքը նկատում են և գնահատում: Նա կսկսի ավելի շահագրգռված աշխատել, ավելի մոտ լինել ընկերներին:

Օղակում պետք է բոլորը [illegible]քարեն անտարբերության դեմ. Եթե հիվանդացել է ընկերդ, պետք է նույն օրը այցելես նրան, բացատրես տնային հանձնարարությունները: Միշտ պետք է օգնել հոկվարին՝ ցույց տալ դիաֆիլմեր, խաղեր սովորեցնել, կազմակերպել լավագույն նկար-



ների մրցանակաբաշխությու[illegible]: Օղակավարը պետք է [illegible]անա իր օղակի յուրաքանչյուր անդամի ծննդյան օրը: Եթե ամեն ինչում օղակը միասնաբար է հանդես գալիս, նշանակում է՝ այդ օղակը միշտ բարձր կպահի իր պատիվը: Դու երևի շատ ես լսել բանվորի պատիվ, զինվորի պատիվ, դպրոցի պատիվ արտահայտությունները: Պատիվը յուրաքանչյուր մարդու և կոլեկտիվի արժանիքն է: Եթե պիոներները լավ են սովորում, աշխատում



են բոլորի համար, օգնում են միմյանց և թույլերին, դժվարություններից չեն նահանջում, իրենց խոսքի տերն են, այլ կերպ ասած, եթե ապրում են պիոներական օրենքներով, նշանակում է նրանք բարձր են պահում իրենց օղակի և ջոկատի պատիվը: Եվ եթե մեկը կհանդգնի արատավորել այդ պատիվը, անխնա դատապարտեք նրան, աշխատեք, որ մյուս անգամ նման բան չկրկնվի:

Օղակը ոչ միայն բարեկամական, այլև պայքարող կոլեկտիվ է: Նա պա[illegible]տ է կատարելու ամեն մի հանձն[illegible]արություն:

Օղակավա՛ր, սովորեցրո՛ւ, որ օղակը շարվի 5 վայրկյանում, քայլի օղակի կամ ջոկատի քայլերգի հնչյունների տակ: Անհրաժեշտ է, որ օղակի բոլոր անդամներն ակտիվ աշխատեն: Պետք [illegible] բոլոր միջոցառումները [illegible]որ գա[illegible] պիոներներին: Ճիշտ է, ամենից շատ, դու ուզում ես, որպեսզի քո օղակի տղաներն ու աղջիկները հաշվի նստեն քեզ հետ, ընդունեն քո առաջարկությունները: Հակառակ դեպքում շատ դժվար կլինի աշխատել:



digitised by A.R.A.R.@

իմացիր. այդ նախ և առաջ ջոկավարից է կախված:

Օղակավարը պետք է՝

Պաշտպանի իր պիոներներին, լինի լավ ընկեր և արդարացի:

Լինի համարձակ. չվախենա սխալը երեսին ասել, խոստովանի սեփական թերությունները:

Լինի ճշտապահ և կարգապահ:

Լինի առույգ. ինքը չվհատվի և չգցի մյուսների տրամադրությունը:

Ճիշտ են ասում՝ «որպիսի օղակավարը, այնպիսի էլ օղակը»: Լավ է, երբ օղակավարն ինքը շատ բան գիտի և շատ բան կարող է անել: Միայն այդ դեպքում նա և՛ աշխատանքում, և՛ խաղերի ժամանակ, և՛ ուսման մեջ, և՛ սպորտում կընթանա բոլորի առջևից: Օղակավարը պետք է կարողանա նաև հրամաններ տալ և զեկուցել: Նա չպետք է սպասի ջոկատի խորհրդի հանձնարարություններին, ինքը պետք է նախաձեռնություն հանդես բերի: Օղակավարը պետք է ուշադիր լսի օղակի անդամների առաջարկությունները, բացատրի, թե ինչպես են նրանք կատարում իրենց պարտականությունները և օգնի նրանց:



# ՏԱՆԳԱՐԱՅԻ ԱՌԱՋԻՆ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

*Մորժոտ լեռան փեշերը վերջանում էին այստեղ, Տանգարա լճակի ափին: Լճակը ճահճային էր: Հյուսիսից նրա վրա էր բարձրանում մռայլ մի լեռնաշղթա, որի կիրճում փրփրում էր որոտաձայն լեռնային գետը: Հարավից ծաղկազարդ մի հովիտ, իսկ արևմուտքում ուրվագծվում էր Բուրխալա լեռնանցքի ծյունապատ գագաթը: Արևելքում սկսվում էր նոր օրը, և չվող թռչունների երամները թռչում էին դեպի արևելք, իսկ ցածում՝ նրանց ճանապարհին, խառնված ժապավենի նման գալարվում էր Սուսուման գետը:*

*Եվ ահա Տանգարա լճակից քիչ հեռու, լեռնային վտակի ձախ ափին, կառուցվեց առաջին տունը: Դա սովորական որսորդական տնակ չէր, որ այնքան շատ են տայգայում, իսկական տուն էր՝ գերանակապ, երկու սենյակից, իր նախասենյակով և ռուսական վառարանով: Ամեն մի սենյակը մի փոքրիկ պատուհան ուներ: Երբ Ռյաբով Իվանը կեղևահան արեց ապագա ավանի առաջին տան գերանները, ես օգնեցի նրան: Տունը կառուցվեց վտակի ափին: Առաջին սենյակում Նատաշան՝ Իվան Ռյաբովի կինը, հավեր էր պահում, երեխաներին թարմ ձու էր հարկավոր: Մյուս սենյակում իրենք էին և երկու երեխաները: Երկուսն էլ ծնվել էին Եվրաշկա ավանում, այժմյան Տանգարայից ոչ հեռու: Եվ երբ Ռյաբովը կառուցեց իր տունը, երեխաներին ու Նատաշային Եվրաշկայից Տանգարա բերեց, երեխաներն արդեն «մեծ» էին: Նատաշան տարիքով մեծ էր Իվան Ռյաբովից, խելացի, հանգիստ կին էր: Երբ առաջին անգամ տեսա նրան, ինձ թվաց, թե նա երբեք չի ծիծաղել: Տխուր էր և հազիվ լսելի մեղմ ձայն ուներ: Իվան Ռյաբովը ճիշտ նրա հակապատկերն էր՝ բարձր ձայնով խոսող, ուրախ և անհանգիստ: Ամռանը, երբ արևը նստում էր Մորժոտ լեռան ուսին, ես գալիս էի Տանգարա, մտնում Ռյաբովի տունը, և մենք միասին որսի էինք գնում.*

*— Ինձ համար ծաղիկներ կբերես,— ասում էր Ռյաբովի մեծ տղան:*

*Ես խոստանում էի և պատահում էր, որ խոստումս կատարում էի: Բայց ծաղիկներ քաղելն այնքան էլ հեշտ չէր. մոծակներն այնքան շատ էին ծաղիկների մեջ, որ քաղելն ու հավաքելը համարյա անհնարին էր: Բերում էի, նրանք շատ շուտ էին մահանում: Գեղեցիկ, շատ գեղեցիկ*



digitised by A.R.A.R.@

էին նրանք, բայց հոտ չունեին: Վովային դուր էին գալիս գունատ ծաղիկները: Նա երկար-երկար նայում էր նրանց և մի կողմ նետում: Երբ ես ծաղիկներ չէի բերում, փոքրիկը սրտնեղում, նույնիսկ լաց էր լինում:

— Չգիտեմ ինչու՞ է այդպես հուզվում, ի՞նչ է կատարվում այս երեխայի հոգում: Սա նման չէ մյուս երեխաներին: Տխուր է,— ասում էր Ռյաբովը:

— Ոչինչ, Իվան, ոչինչ որ տխուր է, թող առողջ լինի, տխրությունը ոչինչ,—ասում էր Նատաշան:



Վովան սովորում էր Սուսումանի գիշերօթիկ դպրոցում, Տանգարայից քսան կիլոմետր հեռավորության վրա: Ամեն շաբաթ, դասերից հետո Իվան Ռյաբովը նրան տուն էր բերում, իսկ կիրակի երեկոյան նորից ետ տանում: Գունատ, թուլակազմ տղա էր Վովան: Շաբաթ երեկոյան ես գալիս էի նրանց մոտ և Վովային պատմում Հայաստանի մասին: Պատմում էի շոգ օրերի, ջերմ արևի, խաղողի մասին: Նա ո՛չ խաղողն էր պատկերացնում և ո՛չ էլ շոգը:

— Ձեզ մոտ ծաղիկներ կա՞ն,—հարցնում էր:

Ես պատմում էի ծաղիկների մասին: Նա լսում էր և զարմանում, որ ծաղիկները հոտ ունեն:

— Նրանք այնքան գեղեցիկ չեն, որքան այս ծաղիկները, այսպես կենդանի, այսքան գրավիչ չեն,—ասում էի ես.—բայց սքանչելի հոտ ունեն:

Նա չէր պատկերացնում: Կալիմա գետի ափերին հոտավետ էին միայն սխտորուկները, այն էլ շատ հեռավոր կերպով էին հիշեցնում մեր կանաչ սխտորը: Մի տարի քամիները սերմեր բերեցին և սքանչելի նուրբ ու գեղեցիկ ծաղիկներ բուսնեցին ճահճի եզրին: Այնքան գեղեցիկ էին նրանք, որ մենք ժամերով հիանում էինք նրանցով: Այնքան փարթամ էին բացված. այնպես էին շնչում, որ վախենում էիր բարձր խոսել նրանց ներկայությամբ, և, երբ արևը թեքվում էր մայրամուտ, մենք տեսնում էինք, թե ինչպես էին փակում նրանք իրենց աչիկները, հավաքում թերթիկները, կծկվում և ճերմակ քուլաներ դառնում: Նրանք երկար չապրեցին: Կարճ ամառը շուտ վերջացավ, և քամիները պոկեցին նրանց թերթիկներն ու ցրիվ տվեցին ջրերի վրա: Վովան լալիս էր և ամբողջ օրը չէր խոսում:

Մի քանի անգամ ես նրան հետս տարա ձուկ որսալու: Աշնան օրերն էին, ձկները գետաբերաններից ետ էին գալիս և շտապում դեպի մեծ գետը՝ Կալիման: Շատ էին գալիս, գետակներում չէին տեղավորվում, տրորում էին իրար և շատերն էլ դուրս էին թռչում ջրից ու մնում ցամաքում: Այդ օրերին ձուկը շատ առատ էր: Մեր բռնած ձկնե րի համար շատ էր ուրախանում Վովան, բայց այնպես չէր ուրախանում, ինչպես բոլոր երեխաները կուրախանային: Նա ոչ մի շարժում չէր անում. աչքերը ժպտում էին, բայց ինքը անշարժ էր, կարծես մի ուժ հսկում էր նրան, չէր թողնում, որ նա շարժվի: Նա շատ էր նման իր տխուր մորը:

— Ոչինչով սրան չես զարմացնի,— ասում էր Իվան Ռյաբովը:

Մի անգամ Վովան դիմեց ինձ այսպիսի հարցով.

— Խնդրում եմ ձեզ, Յան, կարդացեք այս թվաբանական խնդիրը, ես այստեղ մի բան չեմ հասկանում:

Ես կարդացի, այնտեղ գրված էր՝ «Եթե մեկուկես խնձորն արժենա կոպեկուկես, որքա՞ն կարժենա տասը խնձորը»:

— Ի՞նչը չես հասկանում,—հարցրեցի ես:

— Ես չգիտեմ, թե ի՛նչ է խնձորը:

Այո, նա դեռ չգիտեր: Նա դեռ խնձոր չէր տեսել:

— Ես քեզ Խերսոն կտանեմ, խնձոր շատ կտեսնես,—ասում էր Նատաշան:

Կիրակի օրերը նա ինձ ստիպում էր պատմել քաղաքների մասին: Ես պատից կախած քարտեզի վրա ցույց էի տալիս իմ իմացած քաղաքները և պատմում նրանց մասին: Նա, ինչպես ինքն էր արտահայտվում, «մայր ցամաք» չէր տեսել: Ինչպես բոլոր ռուս երեխաները, նա էլ երազում էր Մոսկվան տեսնել: Երբ ես նրան ասացի, որ Մոսկվան չեմ տեսել, նա չզարմացավ:

— Դու ռուս չես, դու կարող ես և չտեսնել,—ասաց նա:

— Կտեսնես, կտեսնես,—դիմեց Նատաշան տղային,—կգնաս Մոսկվա, հետո Խերսոն, տատիկիդ և պապիկիդ մոտ կաթի սեր կուտես: Խերսոնում ծաղիկներ շատ կան, գեղեցիկ, հոտավետ ծաղիկներ:

Այսպես անցնում էին օրերը, մենք «հեքիաթներ» էինք պատմում նրան, նա երազում,





digitised by A.R.A.R.@

հուզվում էր և աշխատում էր այնպես անել, որ հուզմունքը չնկատեինք, չզգայինք։

— Ինձ երկա՞ն կթողնե՞ն,— հանկած հարցրեց նա։

Վովան համարյա չէր խաղում և առհասարակ, քիչ էին խաղում նաև նրա դասընկերները։ Այստեղ երեխաները խաղեր չունեին, ամռանը մոծակներն էին խանգարում, ձմռանը՝ սառնամանիքը։

Իվան Ռյաբովը այդ տարի պատրաստվում էր Վովային «մայր ցամաք» տանելու։ Այս լուրն ավելի էր տխրեցրել պատանուն։

—Ուզու՞մ ես գնալ, Վովա,—հարցրեց Նատաշան որդուն։

—Չգիտեմ, —պատասխանեց Վովան։

—Ինչու՞, որդիս, ինչու՞ չգիտես։

Այսպիսի խոսակցությունների ժամանակ Վովան լռում էր։ Տխրում էր նաև Նատաշան։

Երեկոյան մենք նրանց ճանապարհ էինք դնում։

--Խելացի կլինես, տատիկին, պապիկին կլսես,—խրատում էր Նատաշան,—եթե կուզես՝ մնա այնտեղ, մի երկու տարի հետո մենք էլ կգանք։

Վովան գլխով էր անում։ Հրաժեշտի պահին նա ժպտաց, ժպտաց նաև Նատաշան։ Ես առաջին անգամն էի տեսնում նրանց ժպիտը։ Նատաշան արտասվեց, շոյեց որդու մազերը, հետո հանկարծ խստությամբ հրեց նրան և ասաց.

—Դե, գնա, Վլադիմիր Իվանովիչ, բարի ճանապարհ։

Եվ նրանք գնացին։ Տայգան մթնում էր։ Նատաշան տուն ընկավ և երևի ողջ գիշեր արտասվել էր մենակ։ Այդ զգացվում էր առավոտյան, երբ նա դուրս եկավ տնից։ Կոպերն ուռած էին, դեմքը թաքցնում էր մեզնից։

Մի ամիս էր անցել։ Նատաշան անհանգստանում էր։ Իվան Ռյաբովից հեռագիր չկար։ Նատաշան բոլորովին մռայլվել ու լռակյաց էր դարձել։ Շատ արագ անցան ամռան օրերը։ Օգոստոսի կեսերն էր, սկսվել էր թռչունների աշնանային չուն։ Եղանակները ցրտել էին, սփռաբույսերը թեքվել, պատրաստվում էին պառկելու, առաջին իսկ ձյան հետ նրանք՝ այդ անհագին թփուտները, պառկում էին գետնին և ձյունը նստում էր նրանց վրա։ Նրանք ինձ հիշեցնում էին մեր թաղած խաղողի այգիները։ Մարդիկ և գազանները երկար ձմռան պատրաստություն էին տեսնում։ Ձմեռն այստեղ վերջ չուներ և իզուր չէր, որ հաճախ երգում էին.

«Կալիմա, Կալիմա, աշխարհ զարմանալի վառ,
Տարին տասներկու ամիսդ ձմեռ է,
Մնացածն՝ ամառ»։

Օգոստոսի քանի գիշերը ձյուն տեղաց։ Քամին քշում էր ձյան փաթիլները, խառնում իրար, պտտում տայգայի վրա ու ծեփում ծառերի ճյուղերին։ Առավոտյան ամեն ինչ ճերմակ էր, քամի չկար, սառնամանիք էր։ Նատաշան սովորականի պես ջուր էր բերում աղբյուրից։ Այս անգամ դույլը լիքն էր սառույցի մեծ-մեծ կտորներով։ Նա մոտեցավ տան դռանը և ուզում էր ներս մտնել, բայց ներս չմտավ։ Նրա ուշադրությունը



ՆԿ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ

գրավել էր մոտեցող ավտոմեքենայի ձայնը։ Շուտով ավտոմեքենան երևաց ճանապարհի վերջին ոլորանում, եկավ ու կանգ առավ Նատաշայի տան առաջ։ Նատաշան բնազդաբար քայլեց դեպի մեքենան և հենց այդ պահին, մեքենայից դուրս եկավ Իվան Ռյաբովը՝ Վովային գրկած։

—Ի՞նչ է պատահել, Իվա՛ն,—ճչաց Նատաշան։

Վովան հոր թևերի վրայից ժպտաց։ Նատաշայի երկնագույն աչքերը սոսկում էին արտահայտում։

—Ոչինչ, ոչինչ, Նատաշա, ոչինչ չկա, մի՛ վախենա։ Դուռը բա՛ց արա,—ասաց Իվանը և երեխային ներս տարավ։

Վովայի ոտքերը թուլացել էին դեռևս Վլադիվոստոկում։ Բժիշկն ասել էր, որ անմիջապես պետք է ետ տանել երեխային, եթե չի ուզում կորցնել նրան։ Որ այդ առաջին դեպքը չէ։ Երբ երեխան քիչ էլ մեծանա, ուղևորությունը նրա համար այլևս վտանգավոր չի լինի։

Ռյաբովը նույն օրը դուրս էր եկել Վլադիվոստոկից։ Եվ ահա նրանք հիմա տանն են։

Մի շաբաթից հետո Վովան ոտքի կանգնեց, շուտով կազդուրվեց, և սեպտեմբերի մեկին Իվան Ռյաբովը նրան տարավ Սուսուման։

—Որքա՜ն շատ մարդ կար աշխարհում, ասում էր Վովան աշակերտներին,—մոծակ չկար, մարդիկ երեսկալներ չունեին, տաք է երկիրը։ Լող տուր ջրում, որքան ուզում ես։

Նա նույնիսկ պաղպաղակ էր կերել, որի մասին հեռավոր գաղափար անգամ չունեին Կալիմայում ծնված երեխաները։

—Ես խնձոր կերա, իսկական խնձոր,—ասում էր նա երեխաներին,—կարելի է քնել և պատուհանը բաց թողնել։ Անհագին պատուհաններ էին։ Ի՜նչ գեղեցիկ ու թեթև են հագնված մարդիկ։

Նա ամբողջ տարին պատմում էր ու պատմում։ Նա շատախոս և ուրախ տղա դարձավ։ Նատաշան էլ սկսեց շատ խոսել, ավելի հաճախ ժպտալ և նույնիսկ բարձրաձայն ծիծաղել։

Տանգարան հիմա մեծացել, մեծ բնակավայր է դարձել և նույնիսկ նշված է երկրի քարտեզի վրա։ Ես տեսա նրա առաջին տունը և առաջին բնակիչներին։ Եթե մեծ քաղաք դառնա և նրա պատմությունը գրեն, թող հիշեն Իվան Ռյաբովի ընտանիքին և ինձ, որ կեղևահան եմ արել առաջին տան առաջին հիմնային գերանը։

digitised by A.R.A.R.@

Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Դր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։

ՎՖ .06651։ Պատվեր՝ 1217։ Տպաքանակ՝ 53300։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 17/X. 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.

## ՔԱՐԵ ԴԱՐԻ ՄԱՐԴԻԿ

Ավստրալիայի հայտնագործումից հետո նրա բնիկների (աբորիգենների) թիվը կրճատվել է 6 անգամ, այսինքն՝ 300000-ից հասել է 50000-ի։ Մինչև այժմ էլ գոյություն ունեցող ցեղերի մեծ մասը լավ ուսումնասիրված չէ, իսկ մի քանիսի գոյությունը նոր է հայտնաբերվում։ Այսպես, օրինակ, բաշմանի ցեղի մարդիկ ոչինչ չեն ցանում, չեն աճեցնում, չեն արտադրում։ Նրանք ապրում են այնպես, ինչպես իրենց նախնիները հազարավոր տարիներ առաջ։ Այդ ցեղը իր գոյությունը պահպանում է նրանով, ինչ տալիս է բնությունը։

Կենտրոնական Ավստրալիայում հայտնաբերվել է մեկ ուրիշ ցեղ՝ պինտուբրու։ Այդ ցեղը վաղուց է, ինչ ուրիշ մարդկանց հետ չի շփվում. Նրանք այնպիսի կյանք են վարում, ինչպիսին վարում էին քարե



դարի մարդիկ։ Նրանք կրակն ստանում են շփումով, հագուստ չեն հագնում, կրում են միայն կոնքակապեր, սնվում են մկներով, մողեսներով, միջատներով և խխունջներով։

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՆ ԱՌԱՋԱՑԵԼ ՈՐՈՇ

ՉԻԼԼԻ (պետություն Հր. Ամերիկայում)։ Երբ իսպանացիները Արգենտինայի տափաստաններով մոտենում են Անդյան ձյունապատ լեռնաշղթային, տեղացիներից հարցնում են, թե՝ «Լեռների այն կողմը ի՞նչ երկիր է»։ Կարծելով, թե իրենց հարցնում են՝ «Այնտեղ ինչպիսի՞ եղանակ է», պատասխանը լինում է՝ «Չիլլի», որը տեղացիների լեզվով նշանակում է՝ «Այնտեղ ցուրտ է»։ Ընդունելով այն որպես իրենց հարցի պատասխանը՝ իսպանացիները Անդյան լեռնաշղթայի արևմտյան լանջերին գտնվող երկիրն անվանում են «Չիլլի»։ Եվ մինչև այսօր այդպես էլ կոչվում է, չնայած Չիլի պետությունը գտնվում է հարավային բարեխառն և, մասամբ, տաք գոտում։

ԿԱՆԱԴԱ (Պետություն Հս. Ամերիկայում)։ Երբ Եվրոպայի գաղութարարները հասնում են այստեղ, գյուղերից մեկում բնակիչներից հարցնում են՝ «Սա ի՞նչ երկիր է»։ Ենթադրելով, որ խոսքը վերաբերվում է իրենց բնակավայրին, բնակիչնե-

digitised by A.R.A.R.@

Դարերի ընթացքում շատ բազմազան են եղել գրիչները: Նրանց տեսակներն ու ձևերը, ինչպես նաև հատկությունները համապատասխանել են օգտագործվող նյութերի առանձնահատկություններին:

Հետաքրքրականն այն է, որ



մատենադարանում այժմ ցուցադրվում է հնադարյան ինքնահոս գրչի գծագիրը, որը ստեղծել են հայերը Կիլիկիայում (Հռոմկլա) 1166 թվականին, երբ ամբողջ աշխարհում մարդիկ ինքնահոս գրիչների մասին գաղափար անգամ չէին ունեցել:

## ԳՐԻՉՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ինչպես հաստատում է Ստեփանոս գրչի հիշատակությունը (հընում գրիչ էին ասում նրանց, ովքեր արտագրում և ծաղկում էին մագաղաթյա մատյանները) գրիչը մեկ անգամ թաթախելով կարելի էր գրել մոտավորապես մեկ էջ (700 տառ):

Ամուր ու կարծր նյութերի վրա փորագրելու համար օգտագործել են զանազան կտրիչներ և նույնիսկ դանակներ:

Մոմե, մեղրամոմե թիթեղների և տախտակների վրա գրելու համար օգտագործել են բրոնզյա կամ ոսկրե «գրիչներ»:

Այսպիսի «գրիչների» մի ծայրը սրում էին, մյուս ծայրը տափակացնում, սուր ծայրը ծառայում էր գրելու, իսկ տափակ ծայրը՝ մոմի մակերեսը հարթելու համար:

Պապիրուսի և մագաղաթի վրա առաջներում գրում էին ղալամներով, որոնք մեծ մասամբ եղեգնի կարճ ձողիկներ էին:




Մետաքսի և թղթի վրա սկզբըներում «գրում էին» վրձիններով:

Դեռևս մեր թվականությունից առաջ 7-րդ դարում գրելու համար սկսեցին օգտագործել թռչունների փետուրներ: Այդ է պատճառը, որ մինչև օրս գրչածայրը ռուսերեն կոչվում է «պերո», այսինքն՝ փետուր:

*ԱՐՏԱՇԵՍ ԼԱԶԱՐՅԱՆ*

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՎԱՆՈՒՄՆԵՐ

*որ նրանց պատասխանում են՝ «Կանադա», որ նրանց լեզվով նշանակում է՝ «Գյուղ»: Անծանոթ լեզվով ասված այս բառով էլ եվրոպացիները սկսում են կոչել այս մեծ երկրամասը:*

*ՄՈՆՏԵՎԻԴԵՈ (Ուրուգվայի մայրաքաղաքը): Հարավային Ամերիկայում գտնված այս երկրամասի նոր մայրաքաղաք կառուցելու համար տեղ որոնող հանձնաժողովը գտնվում է այն տեղում, որի մոտերքում այժմ կառուցված է Մոնտեվիդեոն: Լուսաբացին հանձնաժողովի անդամներից մեկը պարզվող մշուշի միջից սար է նկատում և բացականչում է՝ «Մոնտեվիդեո», այսինքն՝ «Սար եմ նկատում»: Լատիներեն ասված այդ բառակապակցությունը այնպես է դուր գալիս հանձնաժողովին, որ հենց այդ տեղում էլ հիմնադրում են քաղաքը և անունն էլ դնում՝ Մոնտեվիդեո:*

*ԱՎԵՏԻՍ ՃՈՒՂՈՒՐՅԱՆ*
*մանկավարժ. գիտ. թեկնածու*



* * *

*Կատուները և սագերը կարող են դիմանալ Ցելսիուսի −100° սառնամանիքին, մինչդեռ սառնաշունչ Արկտիկայի իսկական բնիկները՝ սպիտակ արջերը և ծովափոկերը, հազիվ են դիմանում −80° ցրտին:*

* * *

*Կենդանիների մեջ ամենաերկար լեզուն ունի մրջնակերը: Նրա գլուխը ձգված կնճիթ է հիշեցնում, բայց երկար լեզուն չի տեղավորվում նույնիսկ այդպիսի «կաղապարում»: Այդ պատճառով էլ մրջնակերի լեզուն սկսվում է ոչ կոկորդից և ոչ էլ բերանից, այլ ամրացված է կրծոսկրին:*



* * *

*Կայծակը երբեք չի խփում թռչուններին. նրանց փետուրները էլեկտրականության լավագույն մեկուսիչներ են:*



digitised by A.R.A.R.@

